տի բաղկանայ ութ դատաւորներէ եւ ութ ծերակուտականներէ :

Ալի Մահեր փաշայի դահլիճը պիտի հրաժարի, որպէսզի խնամակալ խորհուրդը նոր վարչապետ մը նշանակէ, եթէ կ'ուզէ : Իրազեկներ աւելի հաւանական կը գտնեն որ թէ խնամակալութիւնը եւ թէ դահլիճը շարունակեն իրենց պաշտօնները մինչեւ Նոյեմբեր, երբ կը գումարուի նոր խորհրդարանը, ընտրելու համար վերջնական խնամակալները :

✕ Զօր. Նեկիպ ունկնդրութեան ընդունելով իտալական պատուիրակութիւն մը, յայտարարեց թէ իր կառավարութիւնը ոչ ֆաշական է ոչ ալ համայնավար, այլ շարժում մը՝ Եգիպտոսի ընկերային եւ տնտեսական վերելքին համար, սահմանադրական միապետութեամբ: «Նոր շրջան մը կը բացուի գործակցութեան համար, Միջերկրականի մէջ» :

✕ Կառավարութիւնը արգիլեց պետական պաշտօնեաներու խաղամոլութիւնը :

✕ Աղեքսանդրիոյ դահիճը հեռեւեալ հեռագիրը ուղղած է զօր. Նեկիպի,— «Պատրաստ եմ ձրի կախելու դաւաճանները »:

✕ Նախկին ընդհ. դատախազ մը, Մոհամմէտ Ազմի, որ պաշտօնանկ եղած էր 1950ին, Ֆարուքի կողմէ, նախագահ նշանակուեցաւ մասնաւոր յանձնախումբի մը, քննելու համար չորս կարեւոր խնդիրներ. —1. Զէնքերու գնումին առթիւ կատարուած զեղծումներ. —2. Ֆարուքի չայլութիւնները: Ամբաստանագիրը կ'ըսէ թէ տուրք անգամ չէր վճարեր, բանի աշխատանքներ կատարել կուտար եւն.: 3. Յունուար 26ի հրկիզումները.— 4.Մասնաւոր դատեր (սպանութիւն, սպայ Գատէր Թահայի, եւ Տոքթ. Ալի Էյուպի, որուն գեղանի կնոջ սիրահարած էր Ֆարուք)եւն:

✕ Գահիրէ գնաց Միջերկրականի անգլ. տորմիղին հրամանատարը, ծովակալ Մաունթպէթըն: Պիտի տեսակցի զօր. Նեկիպի հետ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵԼԺԻՈՅ Աշխատանքի Դաշնակցութիւնը 24 ժամուան գործադուլ մը սարքած է յառաջիկայ շաբաթ օր, բողոքելու համար երկամեայ զինուորութեան դէմ: Այս առթիւ կոչ մը ուղղած է միւս հինգ զինակից երկիրներու արհեստակցական միութեանց, որպէսզի պահանջեն անփոփոխ պահել զինուորութեան շրջանը, 18 ամիս: Տասնեակ հազարաւոր զինուորներ, որոնք 18 ամիս ծառայած են, ի զուր արձակման կը սպասեն: Անգլիոյ մէջ ալ զինուորութեան շրջանը բարձրացած է երկու տարուան :

ՎԱՏԻԿԱՆԻ թերթերը կը գրեն թէ Իրանի կրօնապետը, Սէյիտ Քաշանի, գիր մը ուղղած է որով կ'առաջարկէ գործակցութիւն հաստատել Իսլամներու եւ կաթոլիկներու միջեւ, «խափանելու համար նոր աշխարհամարտ մը»: Կրօնապետը կ'ըսէ.— « Իսլամ եւ քրիստոնեայ բոլոր ժողովուրդներու միութիւնը գլխաւոր երաշխիքն է մարդկային բարօրութեան եւ անդորրութեան, հետեւաբար ամէն ջանք պիտի թափեմ այդ նպատակին հասնելու համար :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ նախագահը ստորագրեց արեւմտեան Գերմանիոյ հետ կնքուած դաշնագիրներու վաւերացման թուղթերը, խնդրելով որ միւս պետութիւններն ալ փութացնեն վաւերացումը: Ստորագրութիւնը տեղի ունեցաւ այն շէնքին մէջ ուր 1947ին ստորագրուած էր Յունաստանի եւ Թուրքիոյ օգնելու ծրագիրը: Նախագահը այս առթիւ յայտարարեց թէ դաշնագիրներուն վաւերացումը նոր քայլ մըն է ամրապնդելու համար արեւմտեան Եւրոպայի եւ ամբողջ Ատլանտեանի շրջանին ապահովութիւնը :

ՄՈՍԿՈՒԱՅԻ անգլ. ամսագիրը շաբաթ օր ատելաղական կոչ մը ուղղեց, լուծելու համար Խ. Միութեան եւ Անգլիոյ միջեւ ծագած վէճերը : Բանգէտներ նշանակալից կը գտնեն այս կոչը ճիշդ այն պահուն երբ գործի ձեռնարկած է Լոնտոնի խորհրդային նոր դեսպանը, Կրոմիքօ: Ամսագիրը կը հարցնէ.— « Ի՞նչ բան կը ստիպէ Բրիտանիան շարունակել իր թշնամական քաղաքականութիւնը Խ. Միութեան հանդէպ: Ամէն խորհրդային քաղաքացի կրնայ ըսել թէ կարելի է գոհացուցիչ կերպով լուծել միջազգային խնդիրները, եթէ փոխադարձ վստահութիւն, բարեացակամութիւն եւ հաւասարութիւն տիրեն »:

ԽԱՂԱՂԱԿԱՆԻ շրջանին համար ալ դաշինք մը պիտի կնքուի, իբրեւ լրացուցիչ Ատլանտեանի դաշինքին: Այս նպատակով ժողով մը տեղի կ'ունենայ Հոնոլուլուի մէջ, մասնակցութեամբ Խաղաղականի պետութեանց: Աւստրալիա եւ Նոր Զելանտա պատրաստակամութիւն յայտնած են մինչեւ մէկ միլիոն զինուոր տրամադրելու, եթէ յարձակում կատարուի :

ԱՐԱԲԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ընդհ. քարտուղարը, Ազզամ փաշա, տեսակցութեան մը առթիւ յայտարարեց թէ լուրջ բարենորոգումներ պիտի կատարուին Եգիպտոսի մէջ, ընկերային, տնտեսական եւ հողային: Պիտի յարգուին փոքրամասնութեանց կրօնները: «Թող օտարները չխառնուին մեր ներքին գործերուն,եւ մէկ տարին չկրացած գնահատելի արդիւնքներ պիտի տեսնէք » : Իսրայէլի մասին ալ խօսելով, Ազզամ փաշա յայտարարեց. — «Կա՛մ Իսրայէլ պիտի յարմարի Միջին Արեւելքի, անոր ամբողջական եւ օգտակար մասը կազմելով, եւ կամ դուրս պիտի ձգուի, իերու զօրութեամբ, առանց պատերազմի » :



ՓԱՐԻԶԻ ԱՂՔԱՏԱԽՆԱՄԸ շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները .

1.— Պ. Գափամաճեան Նուրհանէ 1500 ֆր., Անտիլլի ծերանոցին, Տիկին Ագապի Պիւլպիւլեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի :

2.— Տէր եւ Տիկ. Վարսանեանէ 1000 ֆր. իրենց եղբօր՝ Օ. Փափազեանի մահուան 3րդ տարելիցին առթիւ :



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme,Paris(13)



ՆՈՒԷՐՆԵՐ ԴՊՐՈՑԱՍԷՐԻՆ.— Դպրոցասէր Տիկնանց Վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է վարժարանի 75ամեայ յոբելեանին առթիւ, հետեւեալ նուէրները (Յունիս 15 —31 Յուլիս, 1952).—

Մարսէյլի Յոբել. Յանձնախումբէն 118.000 ֆր., Մարօքահայ համայնքէն 56.000, Տիկին Մաքրուհի Տոքթ. Յովսէփեանէ 5000, Տէր եւ Տիկին Յարութիւնեանէ (Եդուարդ Շիրինեանի մահուան առթիւ) 5000, Պարոն Վահրամ Մօսկոֆեանէ Վէզինէ 5000, Պ. Խոյեանէ 2000, Տիկին Գրիգորեանէ 1000, Պ. Պերճ Պէյլէրեանէ (Ամերիկա) 20 տոլար:



ՎԵՐԱՄՈՒՏ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՎԱՐԺԱՐԱՆԸ.— Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կը վերաբացուի Հոկտ. 1ին : Արձանագրութեան համար դիմել վարժարան, 1 Bld. du Nord, Le Raincy, երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ առաւօտները ժամը 9—12:ՀեռաձայնLe Raincy 172:

3. Զօր. Նէկիպի կամ անոր թեկնածուին տեղ տալ Միջին Արեւելքի վերին հրամանատարութեան մէջ. —4. Անգլիա եւ Մ. Նահանգները մեծաքա-նակ ծանր զէնքեր, հրասայլեր եւ թնդանօթներ զրկեն եգիպտական բանակին :

## Կացութիւնը Իրանի մէջ

Վերջին տեղեկութեանց համաձայն, Անգլիա միջոցներ կը խորհի վերսկսելու համար բանակ-ցութիւնները, օգտուելով Տոքթ. Մոսատեղի նոր ծանուցագրէն: Ամերիկեան կառավարութիւնն ալ յանձն առած է օգնել երկու կողմերուն եւ կը սպասէ որ Անգլիա «շինարար» հակառաջարկներ ներ-կայացնէ :

Անգլեւսաքսոն թերթերը կը հաստատեն թէ Գ. Էչխսըն, որ նոր վերադարձաւ Հարաւ. Ամերի-կայէն, «խորապէս մտահոգ է Իրանի կացութե-նէն» եւ խորհրդակցութիւններ կը կատարէ Ուա-շինկթընի բրիտանական դեսպանին հետ: Մ. Նա-հանգներու կառավարութիւնն անընդունելի կը գտնէ Իրանի վերջին ծանուցագրին պայմանները, բայց եւ այնպէս կը կարծէ թէ նոր պատեհութիւն մը կը ներկայանայ, բանակցութիւնները վերսկսե-լու համար: Ամերիկա չուզեր միջնորդի դեր կա-տարել, բայց պատրաստ է իր բարեխօսութիւնը առաջարկելու: Ուաշինկթընի մէջ հետզհետէ ա-ւելի տրամադիր կ'երեւան ուղղակի օգնելու Տոքթ. Մոսատեղի կառավարութեան, ներկայ տն-տեսական տագնապին մէջ. այլապէս կը վախցուի որ համայնավարները տիրանան իշխանութեան :

Թուրք մամուլին կարծիքով, Իրան «դէպի հա-մայնավարութիւն կը սահի»: Անգարայի թերթե-րը կը պահանջեն որ արեւմտեան պետութիւնները եւ մանաւանդ Անգլիա դերազօյն ճիգ մը փոր-ձեն, «որպէսզի երկաթեայ վարագոյրը չիջնէ այդ երկրին վրայ»: Ընդդիմադիր օրաթերթ մը, Տիւն-եա, կը գրէ.

— «Կոմինֆորմին ուժերը սպրդած եւ ամրա-պէս տեղաւորուած են Իրանի մէջ: Անոնք խնա-մով կը պատրաստեն այն ազդակները որոնք դիւ-րաւ պիտի գրգռեն ժողովրդային զանգուածները՝ պատեհ ժամուն»:

╳ Ծերակոյտը կը դժկամակէր վաւերացնել վարչապետին լիազօրութիւնը՝ վեց ամսուան հա-մար. բայց որոշեց համակերպիլ, նկատելով որ Տոքթ. Մոսատեղ կը սպառնայ հրաժարիլ :

Վարչապետը մերժեց ջնջել պաշարման վիճա-կը, հակառակ իր իսկ բարեկամներուն առաջար-կին: Հինգ հոգինոց պատուիրակութիւն մը ներ-կայացաւ Տոքթ. Մոսատեղի, համոզելու համար. բայց անօգուտ: Ուրեմն մէկ ամիս եւս երկարաձգ-ուեցաւ պաշարման վիճակը: Ջնջում պահանջող-ներուն գլուխը կը գտնուէր կրօնապետին՝ Քաշա-նիի օգնականը, որ ըսաւ. —«Մենք պէտք չունինք պաշարման վիճակի: Այդ օրէնքին տակ էր որ ձերբակալուեցան մեր բարեկամները»:

Պաշարման վիճակը հաստատուեցաւ անցեալ Մարտին, Թէհրանի եւ գաւառի մէջ :

╳ Հուէյն Մաքքի, վարչապետին աջ բազու-կը, ճամբայ ելաւ դէպի Մ. Նահանգները, ընդու-նելով Միջազգային դրամատան հրաւէրը :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊՈՂՊԱՏԻ ԵՒ ԱԾՈՒԽԻ ձուլման Վերին Իշ-խանութիւնը գործի ձեռնարկեց. կիրակի, 10 Օ-գոստոս, Լիւքսէնպուրկի մէջ: Այս ծրագիրը ա-ռաջարկած էր Ֆրանսայի արտաքին նախարարը, Պ. Ռոպէր Շուման, 1950 Մայիս 9ին: Ուրեմն քսանեւօթը ամիսէ ի վեր կը բանակցէին արեւ-մտեան վեց պետութիւններ, վերջնական ելքի մը յանգելու համար: Իսկապէս պատմական դէպք մըն է որ կ'արձանագրուի Եւրոպայի տարեգրու-թեանց մէջ: Բացումը կատարեց Ֆրանսացի նա-խագահը, Պ. Ժան Մոնէ, բացատրելով թէ առա-ջին քայլն է որ կ'առնուի Եւրոպայի միութիւնը, բարօքութիւնը եւ խաղաղութիւնը գլուխ հանելու համար: Կազմակերպութեան կը մասնակցին Ֆը-րանսա, Գերմանիա, Իտալիա, Պելճիա, Հոլանտա եւ Լիւքսէնպուրկ: Անգլիա բարեացակամ չէզո-քութիւն կը պահէ: Վարչութեան բոլոր անդամ-ները հանդիսաւորապէս երդում ըրին :

ԱՐԺԱՆԹԻՆԻ հերոսուհին, Եւա Փերոն, թաղ-ուեցաւ կիրակի օր: Հեռագիրը կ'ըսէ թէ երկու միլիոն յուղարկաւորներ կը հետեւէին թափօրին, որուն գլուխը կը գտնուէին նախագահ Փերոն, կա-ռավարութեան անդամները, դեսպանները եւն.: Դամբանականները ամէն կողմ կը լսուէին բարձ-րախօսներու միջոցաւ: Առաջին դամբանականը խօսեցաւ իտալական դեսպանը, իբրեւ երիցագոյն անդամ: Դագաղը ուսամբարձ կը կրէին քառասուն բանուորներ :

ՅՈՐԴԱՆԱՆԻ թագաւորը պիտի հրաժարի, հի-ւանդութեան պատճառով: Խնամակալութիւն մը պիտի կազմուի :

ԴԷՊԻ ԱՐԱՐԱՏ վերելքը սկսաւ շաբաթ օր, ա-ռաջնորդութեամբ Ժան Ռիքիէի, որուն կ'ընկերա-

### ՎԻԷՆԻ ԳԱՂՈՒԹԻՆ

Լիոնի եւ Շրջ. Ազգ. Միութեան վարչութիւնը կը ծանուցանէ թէ, այս Ուրբաթ առաւօտ ժամը 9ին, Ս. Աստուածածնի տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Վիէնի Հ. Յ. Դ. «Օհաճանեան» ակումբի սրահին մէջ; 2 rue Cuvier:

Այս առթիւ նաեւ տեղի պիտի ունենայ աւան-դական խաղողօրհնէքի պաշտամունքը :

ԿԱՐԵՒՈՐ — Նոյն օրը կէսօրէ վերջ ժամը 3ին տեղի պիտի ունենայ կարեւոր ժողով մը նոյն վայրին մէջ: Հետեւաբար կը խնդրուի բոլորէն որ, առանց բացառութեան, ներկայ ըլլան, կազ-մելու համար Ազգային Միութեան վարչութիւն մը, որ պիտի վարէ տեղական ազգային եւ կրօնա-կան բոլոր ընթացիկ գործերը :

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Համախարբերդցիական Միութեան Լիոնի մաս-նաճիւղը, ի պատիւ իր պատգամաւոր հիւրերուն կազմակերպած է խնջոյք մը Օգոստոս 16ի շաբաթ կէսօրէն սկսեալ մինչեւ իրիկուան ժամը մէկը Յոյներուն սրահին մէջ, 5 rue Bonnefoy: Սիրով կը հրաւիրուին բոլոր Խարբերդցիները եւ իրենց բարե-կամները :



### ՆԱՒԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ LA REDONNE

17 Օգոստոս, Կիրակի առաւօտեան ժամը 7ին, Monte Cristo նաւով, որ կը մեկնի Vieux Portէն Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ Շրջ. վարչութեան :

Տեղերը սահմանափակ ըլլալով կը խնդրուի նա-խօրօք արձանագրուիլ Նոր Սերունդի անդամնե-րու մօտ :



ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ. — Համախարբերդցիական Միութեան (Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւ-նը) իր ցաւակցութիւնները կը յայտնէ հայրենա-կից Պ. Զէնոբ Քէշիշեանի անցուցած արկածին առ-թիւ եւ շուտափոյթ ապաքինում կը մաղթէ :

ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ. — Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Ի-թալիի մասնաճիւղը իր ցաւակցութիւնը կը յայտ-նէ ընկերուհի եւ ընկեր Լուսիկ եւ Գրիգոր Ամի-րայեաններուն, իրենց մեծ մօր՝ Մաննիկ Ամիրայ-եանի մահուան առթիւ :

նան ուրիշ Ֆրանսացիներ եւ Թուրքեր: Պիտի փոր-ձեն գտնել Նոյի Տապանին մնացորդները, ինչպէս փորձած էր Ամերիկացի Սմիթ, 1949ին, առանց արդիւնքի մը յանգելու :

ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ուժը պահանջեց վարչապե-տէն խիստ միջոցներ ձեռք առնել, գիներու բարձ-րացումը արգիլելու համար :

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ. — Հոկտ. 5ին մեծ պարահանդէս կազմակերպուած Հ. Յ. Դ. Ն. Սերունդի Փարիզի մասնաճիւղի կողմէ, Cercle Militaire: Մանրամաս-նութիւնները Սեպտեմբերին :



### ԿԱՐԵՒՈՐ ՀԱՍՑԷ ՄԸ

Մարսիլահայ գաղութի հանրածանօթ մանրէա-բանը՝ Տ. Գ. ՀԷԼՎԱՃԵԱՆ Մարսիլիոյ եւ Լիոնի համալսարաններէ վկայուելէ ետք իր Լապորա-թուարը բացած է 35 Cours Franklin Roosevelt, ուր արեան, մէզի, թուքի եւ ամէն տեսակ հիւանդու-թեանց վերաբերեալ քննութիւններ կը կատար-ուին խղճմտօրէն :



Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Dameame;Paris(13)

## ԼՈՆՏՈՆԷՆ-ՆԻՒ ԵՈՐՔ ԵՒ ՎԵՐԱԴԱՐՁ 8 ԺԱՄԷՆ

Բրիտանական ինքնամուղ ռմբաձիգը, «Քամպէրա»ն կոտրեց բոլոր մրցանիշները, կտրելով Ատլանտեան ովկիանոսին երթուդարձը, 10 ժ. 4 վայրկեանէն, երթ 729 քմ. 4 ժամ 34 վայրկեան, դարձ 969 քմ. 3 ժամ 25 վայրկեան: Այս գիծը Նիւ Եորք – Լոնտոն առաջին անգամ կտրած էին 20 ժամ 29 վայրկեանէն, 15 տարի առաջ: «Քամպէրա»ն Ալտէրկրովէն (Իրլանտա) մեկնեցաւ ժամը 6.34ին դէպի Կէնտէր (Նոր Երկիր) եւ վերադարձաւ Ալտէրկրով ժամը 16.38ին: Երկու ժամ սպասեց Կէնտըրի առջեւ հրանիւթ առնելու համար: Ուստի իրականին մէջ մօտ ութ ժամ թռիչքով 6650 քիլոմեթր կտրեց:

Հովը կը փչէր Արեւմուտքէն ժամական 160 քմ. արագութեամբ, եւ երբեմն ալ 294 քմ. արագութեամբ խանգարելով ընթացքը: Մեկնած ատեն մինչեւ 12000 մեթր բարձրացած էին եւ ամբողջ տեւողութեան այդ բարձրութեան վրայ մնացին: Անգլիական օդատորմիղը շինել կուտայ այս ռմբաձիգները, մեծ քանակութեամբ:

### ԱՀՌԵԼԻ ՊԱՅԹՈՒՆ ՄԸ

ՍԷՆ ՇԱՄՈՆ, 24 Օգոստոս, (Յառաջ).—6 Մեռեալ, 18 վիրաւոր, (մէկը մեր Րաֆֆին):

Քաղաքիս մետաքսի ամենամեծ գործարանը գոց էր շաբաթներէ ի վեր, արձակուրդի պատճառով: Այսօր, երկուշաբթի, հազիւ վերսկսած էին աշխատանքը, երբ կազային պայթիւն մը տեղի ունեցաւ: Վեց բանուորներ մեռան, 18 հոգի վիրաւորուեցան: Վիրաւորներուն մէջ է մեր Նոր Սերունդի անդամներէն Րաֆֆի Մարգարեանը: Թթուածինն ու կազը այնքան ազդած են որ, ժամերէ ի վեր արուեստական օդ կը ներշնչեն երիտասարդ ընկերոջ: Բարեբախտաբար իր թոքերը զօրաւոր են: Միւս վիրաւորներն ալ փըրկուած կը համարուին, թէեւ երեքին վիճակը շատ ծանր է: Սէն Շամոնի Նորաշէն հիւանդանոցին ներսն ու փողոցը բազմաթիւ հայրեր եւ մայրեր լուրի կը սպասեն իրենց սիրելիներէն:— Ս.

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ, Խազախստանի եւ Էսթոնիոյ Կեդր. Կոմիտէները որոշեցին Սեպտ.ի կիսուն նիստի հրաւիրել իրենց համագումարները, պատրաստուելու համար Հոկտ. 5ի ընդհ. ժողովին:

ԱՊԱՏԱՆԻ ՆԱՒԹԱՀՈՐԵՐԸ շահագործելու համար, ամերիկեան մեծ ընկերութիւն մը Թէհրան ղրկած է իր ներկայացուցիչը, որ գաղտնի բանակցութիւններ կը կատարէ Իրանի կառավարութեան հետ: Անգլիացիները իրար անցած են:

ՄՈՌԻՍ ԹՈՐԷԶԻ տղան, որ ամբաստանուած էր իբրեւ խռովարար, բանտէն արձակուեցաւ առժամապէս: Քննութիւնները կը շարունակուին:

ԱՆԳԼ. ՕԴԱՆԱՒ մը ծովը ինկաւ Սիկիլիոյ առջեւ: 57 ուղեւորներէն 50ը փրկուեցան իտալական նաւերու միջոցաւ:

ԹԷՀՐԱՆԻ մէջ ձերբակալուեցաւ պարսիկ նացիներու առաջնորդը, Տավուտ Մոնչէ դատէ, խորհրդային տեղեկատու գրասենեակին դէմ կատարուած յարձակման առթիւ: Այս մասին բողոքագիր մը ուղղած էր խորհրդային դեսպանատունը, մասնաւորապէս մեղադրելով ազգայնական կուսակցութիւն մը, «Սումքա»: Ամբաստանեալը 39 տարեկան է, վարդապետ փիլիսոփայութեան, երկար տարիներ ապրած Գերմանիա եւ խանդավառ հետեւորդ Հիթլէրի:— Իրանի կրօնապետը, Այաթոլլահ Քաշանի, Մէքքէ մեկնեցաւ: Վերադարձին համիսլամական ժողով մը պիտի գումարէ Թէհրանի մէջ:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ Կեդր. Կոմիտէն շրջաբերական մը հրատարակեց, որով կը հրահանգէ «ազատ քննադատութիւններ» եւ մաքրագործումներ կատարել յառաջիկայ համագումարին առթիւ, լայն բանալով թերթերուն էջերը: Միեւնոյն ատեն կ'ազդարարուի թոյլ չտալ որ գաղտնիքներ դուրս ելլեն:

ԵՐԵՔ ՄԵԾԵՐԸ կը խորհրդակցին Լոնտոնի մէջ, պատրաստելու համար Մոսկուայի վերջին ծանուցագրին պատասխանը:

ԹՈՒՆՈՒԶԻ վարչապետը եւ մարզպանը Փարիզ պիտի գան այսօր, վաղը, խորհրդակցելու համար բարենորոգումներու մասին:

ՎԵՐԱՄՈՒՏ.— Ֆ. Կ. Խաչի Տէսինի ազգ. դպրոցի արձանագրութիւնները սկսած են արդէն: Կը խնդրենք ծնողներէն շուտով արձանագրել իրենց զաւակները:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Ֆր. Կ. Խաչի Տէսինի Ազգ. դպրոցի հոգաբարձութիւնը Ֆր. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղէն շնորհակալութեամբ ստացած է երկու հազար ֆր. ի նպաստ դպրոցին, ամավերջի դպրոցական հանդէսին առթիւ:

Le Gérant · A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՊՈՒՏՕ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդը եւ Կապ. Խաչը շնորհակալութեամբ ստացած են հինգ հազար ֆր. Տիկին Դաւիթեանէն իր զաւկին Գ. Կ. Դաւիթեանի ամուսնութեան առթիւ:

ՊՈՒՏՕ.— Պ. Սեդրակ Թումիկեանի զաւկին Վարուժանի ամուսնութեան առթիւ եղան հետեւեալ նուէրները.— Տէր եւ Տիկին Թումիկեան Սեդրակ 5000 ֆր. Կ. Խաչին, 5000 Նոր Սերունդին: Ընկեր Գէորգ Հալաճեան հազար ֆր. Կ. Խաչին, հազար ֆր. Նոր Սերունդին: Ընկեր Տօնէրեան հազար ֆր. Կ. Խաչին: Պ. Յ. Ահարոնեան հազար ֆր. Կ. Խաչին: Ընկեր Կիրակոս Հալաճեան 500 Կ. Խաչին, 500 Նոր Սերունդին: Պ. Սարգիս Գոնեալեան 500 ֆր. Կ. Խաչին, 500 Ն. Սերունդին: Ջերմագին շնորհակալութիւն Նոր Սերունդի եւ Կապ. Խաչի կողմէ:

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ.— Տէր եւ Տիկին Հրաչեայ Ամիրաեան եւ ազգականները կը ծանուցանեն թէ այս կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյն մէջ, իրենց մօր եւ ազգականին,

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՆՆԻԿ ԱՄԻՐԱՅԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊԱՏԱՐԱԳ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Եւա Փառանձեմ Թէքէեանի մահուան քառասունքին առթիւ այս կիրակի, Փրատոյի Ս. Սահակ Մեսրոպ Մայր եկեղեցւոյ մէջ ժամը 10ին պատարագ պիտի մատուցուի եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի հոգւոյ հանգուցեալին եւ իր ամուսնոյն Միհրան Թէքէեանի համար:

ՎԻԷՆ.— Ֆր. Կ. Խաչի վարչութիւնը ջերմ մաղթանքներով կը շնորհաւորէ ամուսնութիւնը՝ Տէր եւ Տիկին Թէրզիեագուպեաններու աղջկան Ժինէթի եւ Պ. Յակոբ Մինասեանի:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

Եշ. 28 Օգոստ. ժամը 9ին, Ակնունի Ենթկ.էն:

Շբ. 30 Օգոստ. ժամը 9ին Քրիստափոր Ենթկ.էն:

Սոյն ժողովներու ներկայ կ'ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները: Ժողովները տեղի կ'ունենան սովորական հաւաքատեղիները:

ՀԱՄԱԽՄԲ. Միութեան Վալանսի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս կիրակի առաւօտեան ժամը 9ին Café Cohard, Bld. d'Alsace: Կարեւոր օրակարգ:



### ՎԵՐԱՄՈՒՏ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՎԱՐԺԱՐԱՆԸ.— Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կը վերաբացուի Հոկտ. 1ին: Արձանագրութեան համար դիմել վարժարան, 1 Bld. du Nord, Le Raincy, երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ առաւօտները ժամը 9—12: Հեռաձայն Le Raincy 172:

### ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նկատի առնելով զանազան դիմումներ, վարժարանս ճիգ մը եւս ընելով ընդունած է նաեւ ցերեկօթիկ աշակերտներու արձանագրութիւնը:

Արձանագրութեան օրերն են. երկուշաբթի եւ շաբաթ ժամը 10—19: Հասցէ.— 26 rue Troyon, Sèvres (S. et O.): Հեռ. OBServatoire 18-28:

### ՀԻՒԱՆԴԱՊԱՀՈՒՀԻ Կ'ՈՒԶՈՒԻ

Անտիյլիի ծերանոցին համար վկայեալ հիւանդապահուհի մը կ'ուզուի: Դիմել ուղղակի Maison de Repos Arménienne, 1 rue Jean Finot, Andilly (S. et O.):

